Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 13 1949

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— *Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78։*




# ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆԸ ԵՎ ԱՆՁՆԱԿԱՆԸ ԿՈԼԽՈԶՈՒՄ

*Պատմության մեջ օրինակը չունեցող Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան տապալեց կապիտալիզմը մեր երկրում, արմատախիլ արեց ամեն մի շահագործում, լիկվիդացրեց բոլոր ու ամեն տեսակի հարստահարողներին ու ճնշողներին։ Հոկտեմբերյան ռևոլյուցիան ազատություն բերեց միլիոնավոր աշխատավոր գյուղացիների, ազատագրեց նրանց կալվածատերերի ու կապիտալիստների, կալվածատերերի ու կապիտալիստների, վաշխառուների ու կուլակների շահագործման ծանր լուծը դեն շպրտեց նրանց ուսերից։*

*Հոկտեմբերյան ռևոլյուցիայով էլ սկսվեց անցումը դեպի նոր ուղին՝ կոլխոզային ուղին։ Կիրառելով երկրի ինդուստրացման բոլշևիկյան քաղաքականությունը, դրանով մեր պարտիան և պետությունը ամուր հիմքեր ստեղծեցին գյուղատնտեսության արմատական վերակառուցման համար։ Գյուղում տեղի ունեցավ մի հեղաշրջում, որն իր հետև-*

վանքներով 1917 թվականի հոկտեմբերի ռեվոլյուցիոն հեղաշրջմանը հսկայագույն նշանակություն ուներ։

Միլիոնավոր աշխատավոր գյուղացիներ կամավոր կերպով միացան, կազմեցին գյուղատնտեսական արտելներ, որպեսզի արտադրության ընդհանուր միջոցներով և կազմակերպված ընդհանուր աշխատանքով կառուցեն կոլեկտիվ, այսինքն հանրային տընտեսություն, ապահովեն լիակատար հաղթանակը կուլակի ու բոլոր շահագործողների նկատմամբ, կարիքի ու խավարի դեմ, իրենց համար ստեղծեցին երջանիկ և ապահով կյանք։

Անցած ժամանակաշրջանը ակնառու կերպով ցույց տվեց կոլխոզային կարգի ուժն ու կենսունակությունը։ Պարտիան հասավ այն բանին, որ գյուղում ամուր տնտեսական բազա ստեղծվեց սոցիալիստական շինարարության համար, մեր երկիրը երբեմնի մանր գյուղացիական տնտեսությունների երկրից դարձավ աշխարհի ամենախոշոր գյուղատնտեսական երկիրը։

Կոլեկտիվացման մեթոդը միակ ճիշտ, առաջադիմական մեթոդն էր մեր երկրի գյուղատնտեսությունը սոցիալիստական ռելսերի վրա փոխադրելու համար։



Ընկեր Ստալինը 1946 թվականի փետրվարի 9-ի նախընտրական ժողովում արտասանած իր պատմական ճառի մեջ ասաց. «Կոլեկտիվացման մեթոդը վերին աստիճանի առաջադիմական մեթոդ դուրս եկավ ոչ միայն նրա համար, որ նա չէր պահանջում գյուղացիների քայքայումը, այլև հատկապես նրա համար, որ նա հնարավորություն տվեց մի քանի տարվա ընթացքում ամբողջ երկիրը ծածկելու խոշոր կոլեկտիվ տնտեսություններով, որոնք հնարավորություն ունեն կիրառելու նոր տեխնիկա, օգտագործելու ագրոնոմիական բոլոր նվաճումները և երկրին տալու ավելի շատ ապրանքային արտադրանք։

Տարակույս չկա, որ առանց կոլեկտիվացման քաղաքականության մենք չէինք կարողանա այդպիսի կարճ ժամկետում վերջ դնել մեր գյուղատնտեսության դարավոր հետամնացությանը»։

Կոլխոզային շինարարության հիմնական ձևը հանդիսանում է գյուղատնտեսական արտելը։

Գյուղատնտեսական արտելի օրինակելի կանոնադրության համաձայն, մեր կոլխոզներում հանրայնացված են մեքենաները, բանող անասունները, տնտեսական ու կուլտու-

րական նշանակություն ունեցող շենքերը․ հանրայնացված է կոլխոզային հողերի մըշակումը․ սակայն, հանրային տնտեսությանը զուգընթաց, գյուղատնտեսական արտելի կանոնադրությունը յուրաքանչյուր կոլխոզնիկի իրավունք է տալիս ունենալու իր անհատական օգտագործման համար տնամերձ հողամաս, բնակելի շենքեր, կով, մանր անասուններ, թռչուններ։

Այսպիսով, արտելը ճիշտ է զուգակցում կոլխոզնիկների անձնական, կենցաղային շահերը նրանց հասարակական շահերի հետ։

ՀամԿ(բ)Պ 17-րդ համագումարում տված իր զեկուցման մեջ ընկեր Ստալինը ասաց, որ գյուղատնտեսական արտելը «ներկա պայմաններում կոլխոզային շարժման միակ ճիշտ ձևն է։ Եվ դա միանգամայն հասկանալի է․ ա) արտելը ճիշտ է զուգակցում կոլխոզնիկների անձնական, կենցաղային շահերը նրանց հասարակական շահերի հետ․ բ) արտելը հաջողությամբ հարմարեցնում է անձնական, կենցաղային շահերը հասարակական շահերին, դրանով իսկ հեշտացնելով երեկվա մենատնտեսների դաստիարակումը կոլեկտիվիզմի ոգով» («Լենինիզմի հարցերը», հայ. 11-րդ հրատ. էջ՝ 572)։

Ինչպես սոցիալիստական ինդուստրացման



հաղթանակի, այնպես էլ կոլեկտիվացման հաղթանակի մեջ մեր երկրի աշխատավորների անձնական շահերը լիովին զուգադիպեցին նրանց հասարակական շահերին։

Տրոցկիստները, բուխարինականները և կապիտալիզմի այլ ռեստավրատորները հանդես էին գալիս մեր երկրի ինդուստրացման և կոլեկտիվացման քաղաքականության դեմ։ Դրանով նրանք հակադրում էին մարդկանց մասնավոր սեփականատիրական նեղ շահերը նրանց հասարակական շահերին, անձնական շահերը բարձր էին դասում հասարակականից։

Պարտիան անողոքաբար մերկացրեց սոցիալիզմի թշնամիների այդ մեքենայությունները, պարտիան համառորեն և սիստեմատիկաբար մարդկանց մեջ դաստիարակեց կոմունիստական վերաբերմունք դեպի աշխատանքը, դեպի հանրային սեփականությունը, որը հանդիսանում է սոցիալիստական կարգերի սրբազան և անձեռնամխելի հիմքը, մեր երկրի հզորության աղբյուրը։

Մեր երկրում ստեղծված արտադրական նոր հարաբերությունների շնորհիվ երբեմնի անհատապաշտ մարդագազանին փոխարինել է նոր՝ ազնիվ զգացմունքների և բարձր բա-

րոյականության տեր մարդը՝ սովետական քաղաքացին, որը կոլեկտիվի երջանկությունը համարում է նաև իր անձնական երջանկությունը, նրա մեջ է տեսնում իր բարօրության աղբյուրը։

— Քո բարօրությունը կառուցիր կոլեկտիվի բարօրության վրա,— այսպես է մտածում ազնիվ ու գիտակից կոլտնտեսականը և իր բարեկեցությունը բխեցնում է իր կոլտնտեսության վերելքից ու զարգացումից, իր ունևորության ուղին իր կոլտնտեսության հաջողության և ամրապնդման մեջ է գտնում։

Եվ իրոք. գործը լավ է գնում այն կոլտնտեսություններում, որտեղ կոլտնտեսականներն առաջին հերթին հոգում են կոլտնտեսային հանրային տնտեսության՝ կոլտնտեսային դաշտերի, կոլտնտեսային ֆերմաների մասին։

Արտաշատի շրջանի Դարղալու գյուղի «Փարիզյան կոմունա» կոլտնտեսությունն իր նվաճումներով հռչակված է մեր ռեսպուբլիկայում։ Եվ դա շնորհիվ այն բանի, որ այստեղ բոլոր կոլտնտեսականներն աշխատում են բարեխղճորեն, ազնվաբար, անդուլ հոգատարություն են հանդես բերում կոլտնտեսության հանրային տնտեսությունը զարգացնելու մասին, որովհետև այստեղ կոլտնտեսականը իր բոլոր շահերի լիակատար բավարարումը տեսնում է կոլտնտեսության



սային արտադրության աճման մեջ, իր և իր ընտանիքի ապրուստի միջոցը, եկամուտի հիմնական աղբյուրը տեսնում է կոլտնտեսության հանրային տնտեսության մեջ։ Եվ պատահական չէ, որ Դարղալուի կոլտնտեսությունում տարեցտարի աճում են եկամուտները, բարձրանում է բերքատվությունը և կոլտնտեսականների աշխօրի արժեքը։

Դարղալուի օրինակը եզակի չէ։

«Կոլտնտեսականների անհատական շահերի զուգակցումը կոլտնտեսականների հասարակական շահերի հետ,— ասում է ընկեր Ստալինը,— ահա թե որտեղ է կոլտնտեսությունների ամրապնդման բանալին»։

Դժբախտաբար, դեռ ոչ բոլոր կոլտնտեսականներն են հասկանում անձնական շահը հասարակականին զուգակցելու կարևորությունը, անձնական շահը հասարակականին ենթարկելու անհրաժեշտությունը։ Կոլտնտեսականների մի մասի մեջ դեռևս արմատացած են անիծյալ անցյալի մնացորդները, մանր սեփականատիրական ոգին։

Ընկեր Ստալինը դեռևս 1929 թվականին մարքսիստ-ագրարագետների կոնֆերանսում ասել է. «Հարկ կլինի դեռևս շատ աշխատելու այն բանի վրա, որպեսզի վերակերտենք կոլտնտեսական գյուղացուն, շտկենք նրա

անհատապաշտական հոգեբանությունը և նրանից սոցիալիստական հասարակության իսկական աշխատավոր պատրաստենք»։

Վլադիմիր Իլյիչ Լենինը ասում էր, թե մանր հողագործի վերամշակման, նրա ամբողջ հոգեբանության վերամշակման գործը մի գործ է, որը սերունդներ է պահանջում։ Եվ իրոք, հիմա էլ դեռ գյուղացիների մեջ քիչ չեն այնպիսիները, որոնք չեն ուզում հաշվի նստել պետության շահերի հետ, իրենց կոլխոզի շահերի հետ և մտածում են միայն այն մասին, որ ավելի շատ պոկեն թե պետությունից և թե կոլխոզից։ Այլապես ինչո՞վ բացատրել, որ առանձին անձնավորություններ, քողարկվելով կոլխոզի անդամի անվան տակ, չարամտորեն խուսափում են աշխատանքից, համառ կերպով չեն ցանկանում ազնվորեն աշխատել, հակահասարակական, պարազիտային կյանք են վարում, քայքայում են աշխատանքային կարգապահությունը կոլխոզում և գյուղում, իրենց ներկայությամբ սպառնալիք են հանդիսանում կոլխոզի և կոլխոզնիկների բարեկեցության և ապահովության համար։

Կան կոլխոզնիկներ, հետամնաց մարդիկ, որոնք գլխավորը համարելով իրենց անհատականը, մասնավորը, սեփականը, ձգտում



են ապօրինի կերպով կոլխոզի հանրային հողերի հաշվին ընդարձակել իրենց տնամերձ հողամասերը։ Դրա հետևանքով նրանք հաճախ թողնում են աշխատանքը կոլխոզում և առաջին հերթին մշակում են իրենց տնամերձ հողերը։ Կան նաև դեպքեր, երբ կոլխոզնիկները պահում են ավելի շատ քանակությամբ անասուններ, քան նախատեսված է արտելի կանոնադրությամբ։ Դժվար չէ կռահել, որ թե մեկ և թե մյուս դեպքերում կոլխոզնիկները թուլացնում են իրենց ուշադրությունը դեպի հանրային տնտեսությունը։

Չի կարելի, իհարկե, հաշվի չառնել կոլխոզնիկների անհատական, կենցաղային շահերը։ Առանց դրան անհնար է ամրապնդել կոլխոզները։ Բայց միաժամանակ յուրաքանչյուր ազնիվ և գիտակից կոլխոզնիկ պետք է հասկանա, որ կոլխոզի հանրային տնտեսությունը հանդիսանում է նրա ունևոր և երջանիկ կյանքի հիմնական ուղին։

Հարկավոր է միաժամանակ իմանալ, որ միայն կոլխոզների հանրային տնտեսության զարգացման հիման վրա կապահովվի կոլխոզային գյուղացիության նյութական և կուլտուրական բարեկեցության վերելքը։ «Դեպի իրենց կյանքի հետագա բարելավու-

մը»,— ասում է ընկեր Մոլոտովը,— գյուղացիները միայն մեկ հավատարիմ ուղի ունեն —դա կոլխոզների ամրապնդման բոլշևիկյան ուղին է»։

Կոլխոզնիկների անձնական և հասարակական շահերի զուգակցումը պահանջում է անշեղորեն ընդարձակել հանրային տնտեսությունը։ Պրակտիկան ցույց է տվել, որ այնտեղ, ուր կոլխոզի հանրային տնտեսությունը արագ է զարգանում և կոլխոզնիկների ստացած եկամուտը աճում է, այնտեղ իջնում է կոլխոզնիկների շահագրգռվածությունը դեպի անձնական տնտեսությունը։

Կոլխոզնիկների հանրային հարստության աճման և ամրապնդման երաշխիքը բոլոր կոլխոզնիկների գիտակից վերաբերմունքն է դեպի աշխատանքը, բոլորի ակտիվ մասնակցությունը կոլխոզի աշխատանքներին։

Ընկեր Ստալինը ասել է.

«Եթե բոլոր կոլխոզնիկները, բոլորը, և ոչ թե մեծամասնությունը, աշխատեն ազնվորեն,— կոլխոզները կլցվեն մթերքներով, նրանք կլցվեն ամեն տեսակ բարիքներով և մեր երկիրը կդառնա ամենահարուստ երկիրն աշխարհում»։

Բոլշևիկների պարտիան և սովետական կառավարությունը անդուլ հոգատարություն



են հանդես բերում մեր կոլխոզների հանրային տնտեսության աճման համար, պաշտպանում են կոլխոզային գյուղացիության շահերը։ Վերջին տարիների ընթացքում Համ. Կ(բ)Պ Կենտկոմը և Սովետական Միության կառավարությունը մի շարք միջոցառումներ են ձեռք առել կոլխոզների հանրային տնտեսությունն ուժեղացնելու և կոլխոզնիկների եկամտաբերությունը բարձրացնելու համար։ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի փետրվարյան պլենումի պատմական որոշումը հանդիսանում է մեր կոլխոզները կազմակերպչորեն և տնտեսապես ամրապնդելու և կոլխոզների հանրային հարստությունը բազմապատկելու ծավալուն ծրագիր։ Պարտիայի և կառավարության որոշումները—«Կոլխոզների հանրային հողերը շռայլումներից պաշտպանելու միջոցառումների մասին» (1939 թ.), «Կոլխոզնիկների համար աշխօրերի պարտադիր մինիմումը բարձրացնելու մասին» (1942 թ.), «Կոլխոզներում գյուղատնտեսական արտելի կանոնադրության խախտումները լիկվիդացնելու միջոցառումների մասին» (1946 թ.)— նպաստում են կոլխոզների հանրային տնտեսության ուժեղացմանը և կանգնած են կոլխոզնիկների շահերի պաշտպանության դիրքերում։ Մեկ տարի առաջ ՍՍՌՄ Մինիստր-

ների Սովետը որոշում ընդունեց «Կոլխոզներում աշխատանքի կազմակերպումը բարելավելու, արտադրողականությունը բարձրացնելու և վարձատրությունը կարգավորելու միջոցառումների մասին»։ Այդ որոշումը բխում է կոլխոզնիկների անձնական և հասարակական շահերի ճիշտ զուգակցման անհրաժեշտությունից, պաշտպանում է ազնվաբար աշխատող կոլխոզնիկների շահերը և ուղղված է հակակոլխոզային տարրերի դեմ։

Գյուղատնտեսության հետագա վերելքի խնդիրները պահանջում են արմատապես բարելավել աշխատանքային կարգապահությունը կոլխոզներում, ապահովել բոլոր կոլխոզնիկների ազնիվ և բարեխիղճ աշխատանքը կոլխոզային հանրային տնտեսության մեջ, անողոք պայքար մղել գյուղում եղած պարազիտային, հակահասարակական անձանց դեմ, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, կարգավորել վարձատրությունը։ Պետք է վերջ տալ որոշ կոլխոզներում տեղ գտած հավասարեցմանը, երբ կոլխոզների եկամուտները բաշխվում են անկախ այն աշխատանքի արդյունքներից, որ կատարել են բրիգադաները, օղակները, ֆերմաները և առանձին կոլխոզնիկներ։ Ազնիվ ու լավ աշխատող կոլխոզնիկները պետք է



լինեն նպաստավոր դրության մեջ, կոլխոզներում եղած գավառական ու անբարեխիղճ տարրերի համեմատությամբ։

Մեր երկրի կոլխոզային գյուղացիությունը մեծ գոհունակությամբ ընդունեց ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշումը՝ անասնաբուծության զարգացման եռամյա պլանի մասին, նրա մեջ տեսնելով իր և՛ հասարակական, և՛ անձնական շահը։

Կառավարության և պարտիայի որոշումները, այսպիսով, բարձրացնում են բոլոր կոլխոզնիկների, կոլխոզների ղեկավար աշխատողների շահագրգռվածությունը դեպի դաշտերի բերքատվության բարձրացումը և անասունների մթերատվության աճը։

Դա բխում է իրենց՝ կոլխոզնիկների հասարակական շահերից։ Դա միաժամանակ բխում է նրանց անձնական շահերից, որովհետև ինչքան մեծ է կոլխոզի հանրային հարստությունը, այնքան շատ կլինեն կոլխոզնիկների եկամուտները։

Այժմ, երբ մեր ժողովուրդը Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ վստահորեն գնում է դեպի կոմունիզմ, մեծ նշանակություն է ստանում աշխատավորների քաղաքական դաստիարակությունը։ Գյուղական պարտիական կազմակերպությունն-

րի, գյուղական ագիտատորների կարևորագույն խնդիրն է՝ պայքարել կոլտնտեսականների մի մասի գիտակցության մեջ եղած հնի, կապիտալիզմի մնացուկների դեմ, ամեն կերպ ամրապնդել կոլխոզների հանրային տնտեսությունը, բոլոր կոլտնտեսականների մեջ դաստիարակել գիտակից վերաբերմունք դեպի կոլխոզային աշխատանքը, լիկվիդացնել կոլտնտեսականների մի մասի գիտակցության մեջ եղած մասնավոր սեփականատիրական ձգտումները։ Գյուղում մեր ամենօրյա քաղաքական աշխատանքը պետք է ի սպաս դրվի այս խնդիրների կատարմանը։

Մեր կոլտնտեսականների անձնական շահերը պետք է միշտ և ամենուրեք զուգակցվեն, ներդաշնակվեն նրանց պետական, հասարակական շահերին։

Այդ է պահանջում մեր երկրի շահը։

Այդ է պահանջում կոլխոզային աշխատավորության շահը։

ՀՈՎՀ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ

—◆—



# ՀԱՆՈՒՆ ՊՂՆՁԻ

## ԱԼԱՎԵՐԴՈՒ ՊՂՆՁԱՁՈՒԼԱԿԱՆ ԳՈՐԾԱՐԱՆԻ ԱՆՈԴԱՅԻՆ ՎԱՌԱՐԱՆԻ ԲԱԺԱՆՄՈՒՆՔԻ ԱՎԱԳ ՎԱՐՊԵՏ, ԱԳԻՏԱՏՈՐ ԽՈՒՐՇՈՒԴ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ ԶՐՈՒՅՑԸ

Վերջերս մեր ռեսպուբլիկայի պղնձարդյունաբերության ֆրոնտի մի շարք աշխատողներ, պղնձարդյունաբերության մեջ կատարած երկարամյա ու անբասիր աշխատանքի համար, արժանացան ՍՍՌՄ կառավարական բարձր պարգևների՝ պարգևատրվեցին շքանշաններով ու մեդալներով։ Կառավարական բարձր պարգևների արժանացածների թվում են նաև Ալավերդու Պղնձաձուլական գործարանի մի խումբ աշխատողներ։ Գործարանի անոդային վառարանի բաժանմունքի ավագ վարպետ, ագիտատոր Խուրշուդ Մանուկյանը իր զրույցներից մեկը նվիրեց պղնձագործների կյանքում տեղի ունեցած այդ խոշոր իրադարձությանը։ Տպագրում ենք ագիտատոր Մանուկյանի անցկացրած այդ զրույցը։

***

—Այսօրվա մեր զրույցը նվիրված է պղնձարդյունաբերության առաջավորներին,— սկսեց իր զրույցն ագիտատորը,— մեր կառավարության կողմից շքանշաններով ու մեդալներով պարգևատրված մարդկանց, նրանց, ովքեր սոցիալիստական մրցության մեջ մտնելով, ուժ ու եռանդ չեն խնայում ստալինյան հնգամյակն ավելի սեղմ ժամկետում կատարելու և երկրին ավելի շատ պղինձ տալու համար։ Մեր երիտասարդ բանվորները շատ բան ունեն սովորելու պղնձարդյունաբերության այդ անվանի մարդկանցից։

Նախ ուզում եմ պատմել մեր սիրելի վարպետ Իսակ Պապոյանի մասին։ Նրա կյանքի պատմությունը մեզ, հասակավորներիս, լավ է հայտնի, իսկ եթե մի բան էլ մոռանամ, վարպետ Իսակը ինքը կլրացնի։

Վարպետ Իսակի մանկությունը շատ նման է Հովհաննես Թումանյանի նկարագրած Գիքորի կյանքի պատմությանը։ Գյուղացի Ալեքսանը, Իսակի հայրը, Թումանյանի նկարագրած Համբոյի նման, ուզում էր իր որդուն, Իսակին, տանել քաղաք, որ «մարդ դառնա»։

Եվ մի օր հայրը, բռնած իր տղայի ձեռքը



մտավ Ալավերդու մրից սևացած պղնձաձուլական փոքրիկ արհեստանոցը։

Այդ օրից անցել է կես դար։ Շատ բան է փոխվել Ալավերդում և շատ բան է անցել Իսակի գլխով։

— Ծանր էր առաջներում աշխատանքը,— միջամտում է վարպետ Պապոյանը,— իսկ կարգերը դաժան։ Օրական աշխատում էինք 18 ժամ, մինչև ուժասպառ լինելը։ Դրա դիմաց ստանում էինք 60 կոպեկ։ Այդ չնչին կոպեկներն էլ երբեմն լրիվ չէինք ստանում։ Հսկիչը ներս էր մտնում մտրակը ձեռքին և ամեն մի չնչին բանի համար ծեծում բանվորներին, տուգանում։ Միայն սովետական իշխանության շնորհիվ մեզ, պղինձ ձուլողներիս համար բացվեցին կյանքի դռները, մենք սկսեցինք աշխատել ու ապրել այնպես, ինչպես վայել է մարդուն։ Մեր պետությունը միջոցներ չէր խնայում, մենք էլ ջանք չէինք խնայում մեր գործարանը իսկական գործարան դարձնելու համար։

— Հին, խարխուլ ձուլարանից հետք չի մնացել,— նորից խոսել է սկսում ագիտատորը։ Նախկին երկու փոքրիկ վառարանի փոխարեն կառուցվեցին չորս հսկա հնոցներ, որոնք նախասովետական շրջանի համեմա-

տուլթյամբ, մի քանի տասնյակ անգամ բարձրացրին ձուլարանի կարողությունը։

Այժմ վառարաններն աշխատում են էլեկտրականությամբ։ Ստալինյան հնգամյակի տարիներին գործարկվեց տեխնիկայի վերջին խոսքով սարքավորված արտացոլիչ հզոր վառարանը՝ կոնվերտորի նոր բաժանմունքի հետ միասին։ Նոր սարքավորումների շնորհիվ արդեն 1940 թվին գործարանի արտադրական կարողությունը բարձրացավ 29 անգամ։ Պատերազմից հետո կառուցվեց էլեկտրաձուլարանը, որը զինված է նոր տեխնիկայով և ժողովրդական տնտեսության բազմաթիվ ճյուղերի համար տալիս է մաքուր պղինձ։ Էլ չեմ խոսում մեր գեղեցիկ ու բարեկարգ ավանի մասին իր բազմահարկ, գեղեցիկ ու հարմար բնակելի շենքերով, կինո-թատրոնի, հիվանդանոցի, պոլիկլինիկայի, մանկամսուրի, հյուրանոցի շենքերով, որոնք սովետական իշխանությունը կառուցել է մեզ, պղնձագործներիս համար։ Սիստեմատիկորեն բարձրանում է պղինձ ձուլող բանվորների աշխատավարձը, ավելի են բարելավվում կենցաղային պայմանները։ Ավագ վարպետ Իսակ Պապոյանը այժմ ստանում է 1100 ռուբլի աշխատավարձ։ Բացի այդ, երկարամյա ծառայության համար ամսական ստա-



նում է 266 ռուբլի աշխատավարձի հավելում և 550 ռուբլի կենսաթոշակ։

Եթե այդ բոլորին ավելացնենք նաև պլանները գերակատարելու համար տրվող պարգևատրությունները, ապա վարպետ Պապոյանի ամսական եկամուտը կկազմի մոտավորապես 2500—3000 ռուբլի։

—Ուրիշ է հիմա կյանքը,—տեղից բարձրանալով ասում է Լենինի շքանշանակիր, ավագ վարպետ Հակոբ Մոսինյանը,—ի՜նչ համեմատություն։ Առաջ ես ապրում էի նկուղում, ծանր էր աշխատանքի պայմանները։ Լավ համեմատություն տրավ մեր ապիտատրը, մեր անցյալը, երիտասարդությունը նմանեցնելով Գիքորի կյանքին։ Իմ ընտանիքն այժմ սովետական երջանիկ ընտանիքներից է։ Ես վառերժակտային փառարանի բաժանմունքի ավագ վարպետն եմ և արժանացել եմ ամենամեծ պարգևի։ Կինս՝ Աստղիկը, Տեքստիլ-տրիկոտաժ արտելի վարչության նախագահն է։ Տղաս, Շավարշը, սովորում է Մոսկվայում, նավթային ինստիտուտում, մյուս տղաս՝ Հայկը, Երևանի մանկավարժական ինստիտուտի ուսանող է։

— Ի՞նչ նոր պարտավորություն եք ստանձնել շքանշան ստանալու կապակցությամբ,— հարցնում է ագիտատորը։

— Իմ ղեկավարած բաժանմունքից 8 մարդ արժանացան կառավարական բարձր պարգևի՝ Լենինի շքանշանի։ Դա մեզ պարտավորեցնում է աշխատել ավելի մեծ եռանդով, ավելի շատ պղինձ ձուլել մեր հայրենիքի ժողովրդական տնտեսության համար։ Մենք մանրազննին ուսումնասիրում ենք մեր գործարանի ռեզերվներն ու նրանց օգտագործման հնարավորությունները։ Օրերս պարզեցինք, որ մենք կարող ենք գործարկել ևս մեկ վառարան։ Այժմ այդ վառարանը կառուցված է և շուտով նա էլ կսկսի պղինձ տալ։ Գնալով բարելավում ենք ձուլման տեխնոլոգիան։

Խոսք է վերցնում վարպետ Հովհաննես Սարգսյանը։

— Մինչև վերջին տարիները,— ասում է նա,— ձուլման մի օպերացիան տևում էր 24—30 ժամ։ Բայց Հայրենական Մեծ Պատերազմի տարիներին մենք վերակառուցեցինք աշխատանքը, խորացանք տեխնոլոգիայի մեջ և արտադրական պրոցեսը կրճատեցինք մինչև 18 ժամի։

— Իսկ ինչպե՞ս հասաք այդ հաջողության,— հարցնում է ագիտատորը։

— Շնորհիվ սոցիալիստական մրցության։ Վերջերս մրցություն կազմակերպեցինք հերթափոխությունների միջև։ Այդ մրցման ժամանակ ինձ հաջողվեց ձուլման պրոցեսն իջեցնել մինչև 13 ժամի։ Դրա շնորհիվ մեր գործարանը սև պղնձի ձուլման պլանը կատարեց 136,3 տոկոսով։



* * *

Ագիտատոր Խուրշուդ Մանուկյանը զրույցն ամփոփելիս պատմում է այն խնդիրների մասին, որ այժմ դրված են Պղնձաձուլական գործարանի առաջ։ Իսկ խնդիրներ շատ կան։ Դեռևս ցածր է աշխատանքի արտադրողականությունը, շատ գործ կա անելու տեխնիկա-տնտեսական ցուցանիշները բարելավելու համար։

Ի պատասխան կառավարական բարձր պարգևների, պղինձ ձուլողները խոստացել են ստալինյան նոր հնգամյակի չորրորդ տարվա պլանը կատարել Հայաստանում սովետական կարգերի հաստատման 29-րդ տարեդարձի օրը՝ նոյեմբերի 29-ին։

# ԾԱՂԿՈՂ ԼԵՆԻՆԱԿԱՆԸ

Կումայրի,— այսպես է կոչվել նախկին Գյումրին, որը հետագայում վերանվանվել է Ալեքսանդրոպոլ, իսկ 1924 թվին՝ Լենինական։

Կումայրու մասին պատմությունը ժամանակակիցներին տեղեկություններ է հաղորդում 770 թվից։ Հայ պատմիչներից մեկը, նկարագրելով Արտավազդ Մամիկոնյանի արշավանքները, ի միջի այլոց հիշատակում է նաև Կումայրու անունը։ Հետագայում Կումայրին հիշատակվում է Գյումրի անունով։

1837 թվին Նիկոլայ 1-ինը, շրջագայելով իր տերության սահմաններն, այցելում է նաև Գյումրի. նա ոչինչ չի անում արհեստավորա-առևտրական այդ խղճուկ քաղաքի համար բացի այն, որ, հակառակ ժողովրդի ցանկության, քաղաքը կոչում է իր կնոջ՝ Ալեքսանդրայի անունով— Ալեքսանդրոպոլ։

Ալեքսանդրոպոլի դրությունը է՛լ ավելի վատթարացավ հայ ժողովրդի արգահատելի



թշնամիների՝ դաշնակների տխրահռչակ տիրապետության օրերին։

Դեռ երբեք Ալեքսանդրոպոլի աշխատավորները այնքան ծաղր ու ծանակի չէին ենթարկվել, ինչպես ենթարկվեցին դաշնակցականների ու թյուրքական բռնագրավիչների տիրապետության սև ու դժնդակ օրերին։ Այսպես շարունակվեց մինչև Հայաստանում սովետական կարգերի հաստատումը. Ալեքսանդրոպոլի աշխատավորները, նրա առաջավոր մասը՝ հերոսական բանվոր դասակարգը, ազատության դրոշը պարզելով, ռուս մեծ ժողովրդի եղբայրական օգնությամբ, Լենինի-Ստալինի մեծ պարտիայի ղեկավարությամբ իր ուսերից թոթափեցին դաշնակների արյունոտ լուծը և բռնեցին սոցիալիզմի ճանապարհը։

1924 թվին Վ. Ի. Լենինի մահվան լուրն առնելով Ալեքսանդրոպոլի աշխատավորները խնդրեցին իրենց քաղաքը վերանվանել մարդկության մեծ ազատարար Լենինի անունով։ Սովետական կառավարությունը, ընդառաջելով նրանց, 1924 թվի փետրվարի 26-ին որոշեց.

«Ի նկատի ունենալով, որ Հայաստանի ՍՍՌ Կենտգործկոմը Լենինի մահվան կապակցությամբ Ալեքսանդրոպոլը վերանվա-

նել է Լենինական, որպես առանձնահատուկ դեպք, հաստատել...»։

Եվ ահա 25 տարի է մեր հարազատ քաղաքը կրում է Վ. Ի. Լենինի թանկագին ու բոլորիս հարազատ անունը։

Ահա 29 տարի է Լենինականը Սովետական Միության մեծ ընտանիքում ընթանում է սոցիալիզմի ուղիով և ծաղկում ու բարգավաճում է ստալինյան ջերմ արևի տակ։

## ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆ

Նախառևոլյուցիոն Ալեքսանդրոպոլի արդյունաբերությունը կազմում էր մի քանի տնայնագործական խղճուկ արհեստանոցներ, որոնց ընդհանուր թիվը չէր անցնում 17-ից։ Այդ արհեստանոցների տարեկան արտադրողականությունը կազմում էր 170 ռուբլի։ Բանվորների թիվը հասնում էր 97-ի։ Քաղաքը լուսավորություն ստանում էր անկանոն գործող միակ դիզելից, որի կարողությունը կազմում էր ընդամենը 37 կիլովատ ժամ։

Հայաստանում սովետական կարգերի հաստատման 29 տարիների ընթացքում խոշոր աշխատանք է կատարվել Լենինականում։ Այն իրավամբ այսօր համարվում է ռեսպուբլիկայի արդյունաբերական և կու-



լտուրական երկրորդ կենտրոնը։ Մեկը մյուսի ետևից վեր են խոյացել այնպիսի խոշոր ձեռնարկություններ՝ ինչպիսիք են Մայիսյան ապստամբության անվան Տեքստիլ կոմբինատը, Մոլոտովի անվան Մանարան, Գուլպա-Տրիկոտաժ ֆաբրիկաները, Մեխանիկական գործարանը, Մսի կոմբինատը և ուրիշներ։ Այժմ քաղաքն ունի սեփական տեղական զարգացած արդյունաբերություն, արտադրական կոոպերացիայի լայն ցանց։ Ստալինյան հնգամյակների տարիներին Լենինականում կառուցվեց Տեքստիլ կոմբինատը, որի վրա 100 միլիոն ռուբլուց ավելի կապիտալ է ներդրվել։ Սովետական ներդրումները իրենց լավագույն արդյունքն են տալիս։ Միայն Հայրենական Մեծ պատերազմի տարիներին Տեքստիլ կոմբինատը երկրին տվել է 110 միլիոն մետրից ավելի կտորեղեն։ Լենինականի արդյունաբերության պարծանքներից է Մսի կոմբինատը, որը կառուցվել է Ստալինյան հնգամյակների տարիներին։ Անցած շրջանում ստեղծվել են Մեխանիկական, Գարեջրի, Հացի գործարաններ, Փայտամշակման, Կարի, Կոշիկի. Հրուշակեղենի ֆաբրիկաներ։ Ստեղծված են բազմաթիվ արտադրական արտելներ։

Խոշոր աշխատանք է կատարված Լենինա

կանի երկաթուղային հանգույցի վերակառուցման գործում։ Շոգեքարշային, Վագոնային դեպոները, Գծի և Կապի ուղեմասերը իրենց արժանավույն տեղն ունեն Անդրերկաթուղում։ Քաղաքում ստեղծվել է լուրջ էլեկտրատնտեսություն։ Կառուցված է Լենգէսը, որը էլեկտրաէներգիա է մատակարարում քաղաքի արդյունաբերությանը և բնակչությանը։

Ստալինյան հնգամյակի 3-րդ տարվա պլանը Լենինականի արդյունաբերությունը կատարեց ժամկետից 2 ամիս շուտ։ Ծավալելով սոցիալիստական ստեղծարար մրցությունը, բարձրացնելով ձեռնարկությունների շահութաբերությունը, լենինականցիները 1948 թվի 11 ամսում հայրենիքին տվեցին 13 միլիոն ռուբլի արտապլանային սոցիալիստական կուտակում։ 1948 թվին քաղաքի արդյունաբերական բոլոր ձեռնարկությունները կատարեցին տարեկան պլանները։ Պլանների կատարումը Լենինականում հրաշալի տրադիցիա է դարձել։ Նոր հնգամյակում Մայիսյան ապստամբության անվան Տեքստիլ կոմբինատը դարձել է անճանաչելի։ Կառուցվել են ժամանակակից տեխնիկայով կահավորված ֆաբրիկաներ, օժանդակ ցեխեր ու բաժիններ։



1940 թվի համեմատությամբ, 1950 թվին բամբակեղեն գործվածքի արտադրությունն աճելու է 68 տոկոսով։ Գործվածքային ֆաբրիկան այժմ օրական տալիս է 85 հազար մետր կտավ, իսկ Մանարան ֆաբրիկան՝ 16 տոննա թել։ Ուժեղ թափով առաջ է գնում չթի ֆաբրիկայի շինարարությունը, որի նախագծային օրական կարողությունը լինելու է 136,5 հազար մետր զանազան տեսակի գործվածք։ Ֆաբրիկան տարեկան կարտադրի մոտ 43 միլիոն մետր չիթ։

Ընդլայնվում և վերակառուցվում է Գուլպա-Տրիկոտաժ ֆաբրիկան, որը տարեկան արտադրելու է 1,5 միլիոն կտոր տրիկոտաժեղեն։ 1948 թվի վերջին շահագործման հանձնվեց նոր ցեխ, որը արտադրում է բարձրորակ նուրբ մետաքսյա գուլպա։ Այդ ցեխը այս տարի արտադրելու է 250 հազար զույգ բարձրորակ գուլպա։

Կոշկի ֆաբրիկան 1948 թվին արտադրանքի թողարկումը կրկնապատկեց։ Ֆաբրիկան ներկայումս օրական թողարկում է 2600 զույգ կոշիկ։

Մոտ 20 զանազան տեսակի զգեստ և ըսպիտակեղեն է արտադրում Չկալովի անվան Կարի ֆաբրիկան։ Մեքենայացման է

ներդրվել աշխատատար պրոցեսները, ֆաբրիկան անցել է կոնվեյերային սիստեմի։

Մեխանիկական գործարանը այս տարի վերածվելու է ռեսպուբլիկայի գյուղատնտեսական մեքենաշինական գործարանի։ 1948 թվին, անցյալ տարիների համեմատությամբ, նրա արտադրանքը աճել է 32 անգամ։

Գործող ձեռնարկությունների շարքն է անցել Մսի կոմբինատի պահածոների գործարանը, որի օրական արտադրողականությունը կազմում է 85 հազար տուփ ընտիր պահածո։

Մոտ 60 ասորտիմենտի արտադրանք է տալիս քաղաքի տեղական արդյունաբերությունը։

## ՀՆԳԱՄՅԱԿԻ ՀԵՐՈՍՆԵՐԸ

Սոցիալիստական ստեղծարար մրցությունը օրավուր նոր հաջողություններ է բերում Լենինականի արդյունաբերական ձեռնարկություններին։

Քաղաքի արդյունաբերական ձեռնարկու-



թյուններում աշխատող ավելի քան 250 բանվորներ, բանվորուհիներ, կատարելով իրենց հնգամյա պլանը, այժմ աշխատում են 1952—1954 թվերի հաշվին։ 2000 բանվորներ աշխատում են հնգամյակի վերջին տարվա՝ 1950 թվի հաշվին։

Իր անձնազոհ, հերոսական աշխատանքով բոլորի ջերմ սերն ու համակրանքն է վայելում Շոգեքարշային դեպոյի հրահանգիչ մեքենավար, ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Անդրանիկ Խաչատրյանը։ Նա առաջիններից մեկն էր, որ խորը կերպով ուսումնասիրեց մեր երկրի անվանի մեքենավար Լունինի աշխատանքային մեթոդները և գերազանցեց շոգեքարշի ճախարակման սահմանված նորմաները։ Նշանավոր մեքենավար Խաչատրյանի շոգեքարշային բրիգադան, մի քանի անգամ երկարաձգելով շոգեքարշի կարեվոր մասերի օգտագործման ժամկետը, պետությանը տվել է տասնյակ հազար ռուբլիների օգուտ։

Մեր օրերի երկաթուղային տրանսպորտի հերոսներից է անվանի մեքենավար, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ Գարեգին Աբաջյանը։ Նրա մեթոդները լայն կերպով կիրառվում են ոչ միայն Անդրեր-

կաթուղում, այլև Միության մի շարք առաջավոր երկաթուղային հանգույցներում։ Նա պատվով է կատարել ընկեր Ստալինին տըված խոստումը՝ առանց շոգեքարշը հիմնական նորոգման հանձնելու մեկ միլիոն կիլոմետր վազք կատարելու մասին։

Տեքստիլ կոմբինատում հիացմունքով են խոսում փականագործներ հայր և որդի Միսակ և Խաչիկ Մուրադյանների մասին, որոնք քաղաքում առաջինը կատարեցին իրենց հնգամյա պլանը։

Երկրով մեկ տարածվել է Մոլոտովի անվան Մանարան ֆաբրիկայի անվանի մանող, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ, ՀԿ(բ)Պ Կենտկոմի անդամ Անգին Արսենյանի անունը։ Խորապես տիրապետելով իր գործի տեխնիկային նա իր հնգամյա պլանը կատարել է 2,5 տարում։

Վագոնային դեպոյում, երբ խոսք է լինում հնգամյակի առաջավորների մասին՝ բոլորը մատնացույց են անում փականագործ Պարգեվ Ջեյրանյանին։ Ջեյրանյանը տիրապետում է 7 մասնագիտության։ Վագոնների փայտյա մասերը միացնող երկաթյա կապերը ծակելու աշխատանքն արագացնելու



համար Ջեյրանյանը պատրաստել է մի հարմարանք, որի շնորհիվ մի անգամից ծակում է այդպիսի 10 կապ։

Այսպես են աշխատում Լենինական քաղաքի առաջավոր մարդիկ։

## ԼՈՒՍԱՎՈՐՈՒԹՅՈՒՆ

Նախքան սովետական կարգերի հաստատումը Ալեքսանդրոպոլը ունեցել է 2 դըպրոց՝ միջնակարգ-օրիորդաց դպրոց և Կամերսկին, որտեղ սովորում էին միմիայն հարուստների և վաճառականների երեխաները։ Թաղերում գործում էին նաև մի քանի մասնավոր տարրական դպրոցներ։ Աշխատավորների երեխաները զուրկ էին դպրոց հաճախելու հնարավորությունից։ Քաղաքի բյուջեն կազմում էր 19.587 ռուբլի 87 կոպեկ, որից միայն ոստիկանության և բանտի ծախքերի համար հատկացված էր 7.082 ռուբլի 87 կոպեկ, իսկ քաղաքի լուսավորության ու շինարարության համար ընդամենը 2.069 ռուբլի։

Ալեքսանդրոպոլի գրությունը ավելի վատթարացավ դաշնակների տիրապետության օրով։ Նա ուղղակի մոխիրների կույտի վերածվեց։ Փակվեցին եղած դպրոցները, ա-

մնացել միայն որբանոցների և պանդոկների թիվը...

Սովետական իշխանության գոյության 29 տարիների ընթացքում մեծ նվաճումներ են ձեռք բերվել ժողովրդական կրթության ասպարեզում։ Քաղաքում կա 13 միջնակարգ, 3 ոչ լրիվ միջնակարգ դպրոց, որտեղ սովորում են 14.410 երեխա։ Քաղաքի միջնակարգ և ոչ լրիվ միջնակարգ դպրոցներում աշխատում են 600 մանկավարժներ, որոնց գերակշռող մասը ունի բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն։ Երեք միջնակարգ դպրոց էլ գործում են երկաթուղու Լենինականի հանգույցում, որտեղ սովորում են երկաթուղայինների երեխաները։ Ստալինյան հնգամյակների տարիներին կառուցվեցին բազմաթիվ եռհարկանի դպրոցական շենքեր, բոլոր հարմարություններով։ Լենինականն ունի Մանկավարժական քառամյա, Մանկավարժական երկամյա ինստիտուտներ, Մարքսիզմ-Լենինիզմի համալսարան, Մանկավարժական, Երաժշտական ուսումնարաններ, Դաշտավարական, Կաթնարդյունաբերական և Բուժտեխնիկումներ։ Ատանց արտադրությունից կտրվելու միջնակարգ և թերի միջնակարգ կրթություն են ստանում հարյուրավոր երիտասարդներ։ Մի



քանի տասնյակ շրջանավարտներ են տվել երեք բաներիտ և մեծահասակների գիշերային դպրոցները։

Սովետական ուսուցիչը շրջապատված է ջերմ հոգատարությամբ։ Վերջերս քաղաքի ավելի քան 200 ուսուցիչներ և ուսուցչուհիներ պարգևատրվեցին Սովետական Միության շքանշաններով և մեդալներով, 12 ուսուցիչներ արժանացել են կառավարական բարձրագույն պարգևի՝ Լենինի շքանշանի։ Լենինի շքանշան ստացողների թվումն են ընկ. ընկ. Ա. Հակոբյանը, Ա. Գրիգորյանը, Ա. Ալավերդյանը, Մ. Հայկազունին և ուրիշներ։

## ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹՅՈՒՆ

Առողջապահության գործի դրվածքը նախառևոլուցիոն Ալեքսանդրոպոլում վատթարդրության մեջ է եղել։ 1912 թվին քաղաքն ունեցել է մեկ հիվանդանոց՝ 40 մահճակալով։ 1919—1920 թվերին 25 հազար մարդ քաղաքի Պոլիգոն կոչված մասում դատապարտված էր մահվան։ Երբ տարափոխիկ հիվանդությունների ճիրաններում տառապող ազգաբնակչությունը հազարներով ոչնչանում էր, դաշնակցական կառավարությունը Ալեքսանդրոպոլի առողջապահության գործին

հատկացրել էր ընդամենը 3000 ռուբլի։ Սովետական իշխանության տարիներին քաղաքը ծածկվեց բժշկա-սանիտարական խիտ ցանցով, մեկը-մյուսի հետևից բարձրացան առողջապահական հիմնարկների եռհարկանի կորպուսները։

Լենինականն այժմ ունի 3 հիվանդանոց՝ 430 մահճակալով, գործում է մանկական հիվանդանոցը։ Քաղաքի բուժ հիմնարկներում աշխատում են 112 բժիշկ։ Բոլոր թաղամասերում և նոր կառուցված ավաններում տեղծվել են բժշկական 19-ը կետեր։

Ստալինյան հնգամյակների տարիներին ստեղծվեց կանանց և մանկական 6 կոնսուլտացիա, քաղաքային ծննդատուն։ Եթե սրան ավելացնենք նաև երկաթուղային հանգույցի հիվանդանոցը, ծննդատունը և մյուս բուժ հիմնարկները, ապա պարզ կլինի, թե ինչպիսի հսկայական չափերով է աճել բուժհիմնարկների ցանցը։

Լայն ժողովրդականություն են վայելում Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ, վաստակավոր բժշկուհի Դրամպյանը, վաստակավոր բժիշկներ՝ Ա. Թովմասյանը, Հ. Մխիթարյանը, բժիշկներ՝ Գ. Նոնեզյանը, Ս. Ցայենբերգը և ուրիշներ։



Քաղաքի բժշկական տեխնիկումը արդեն մի քանի հարյուր շրջանավարտներ է տվել։

## ԱՐՎԵՍՏ, ԿՈՒԼՏՈՒՐԱ, ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Արդյունաբերական Լենինականը ոչ միայն հպարտանում է իր բազմաթիվ ֆաբրիկաների ու գործարանների թողարկած բարձրորակ արտադրանքով, իր ուսումնական ու բժշկական հիմնարկներով, այլև իր արվեստով, կուլտուրայով, գրականությամբ։

Իր գոյության 21 տարին է բոլորում Լենինականի Պետական դրամատիկ թատրոնը։ Ավելի քան 130 պիես է բեմադրվել թատրոնում, նրա խաղացանկում սովետական դրամատուրգիայի լավագույն գործերի կողքին իրենց պատվավոր տեղն են գրավում ռուսական, հայկական, արևմտա-եվրոպական դրամատուրգիայի դասական գործերը։ Թատրոնում հասունացել է ստեղծագործական շնորհալի մի կոլեկտիվ, որի հաջողությունների մասին մեծ հիացմունքով են խոսում նույնիսկ մեր ռեսպուբլիկայի սահմաններից դուրս։ Առանձնապես լուրջ հաջողությունների հասավ թատրոնը ընթացիկ թատերաշրջանում, մեծ վարպետությամբ ու գաղափարական խորությամբ բեմականացնելով

«Պատվի օրենքը», «Մահապարտների դավադրությունը» և «Աղբյուրի մոտ» պիեսները։

Սոցիալիստական Լենինականի արվեստի կյանքում նշանակալից դեր է խաղում ֆիլհարմոնիան, որի երգի ու պարի անսամբլը տասնամյա պատմություն ունի։ Ժողովրդական երգի ու պարի հետ միասին անսամբլը հաջողությամբ կատարում է սովետական կոմպոզիտորների և հայ կլասիկ երաժշտության լավագույն գործերը։ Հետաքրքիր ու հարուստ է ֆիլհարմոնիայի ժողովրդական գործիքների անսամբլի ծրագիրը։

Մոտ 600 երեխաներ ու պատանիներ սովորում են Նկարչական, Երաժշտական դպրոցներում, Երաժշտական ուսումնարանում։ Նկարչական դպրոցը իր 26-ամյա պատմության ընթացքում տվել է ավելի քան 400 շրջանավարտներ։ Յուրաքանչյուր տարի դպրոցի կազմակերպած ցուցահանդեսները դիտում են մինչև 6000 մարդ։ Քաղաքի երաժշտական կյանքում ուշագրավ տրադիցիա է դարձել երաժշտական ուսումնարանի սիմֆոնիկ օրկեստրի բաց համերգները։

Ինքնագործ արվեստի ռեսպուբլիկական օլիմպիադաներում հաճախ առաջնություն են շահում Լենինականի ներկայացուցիչները։ Գրեթե քաղաքի բոլոր խոշոր ձեռ-



նարկություններում, ուսումնական հաստատություններում գործում են մի քանի ինքնագործ խմբակներ։

Քաղաքի կուլտուրական կյանքում նշանակալից դեր է խաղում Հայաստանի Սովետական գրողների Միության Լենինականի բաժանմունքը, որի շուրջը համախմբված են տեղում աշխատող երիտասարդ գրողները։ 1948 թվին Հայպետհրատի հրատարակությամբ լույս տեսան Անդր. Հովսեփյանի «Սիրտ» պատմառևոլուցիոն վեպը և Մ. Հարությունյանի բանաստեղծությունների անդրանիկ ժողովածուն՝ «Գարնանային» խորագրով։ Ներկայումս Լենինականի գրողները աշխատում են սովետական իրականությունը պատկերող պիեսների, պոեմների, վեպերի վրա։

## ՔԱՂԱՔԻ ԲԱՐԵԿԱՐԳՈՒՄԸ

1915 թ. քաղաքի բյուջեն եղել է 167 հազար 188 ռուբլի։ Բյուջեն նախատեսված էր ծախսել ոչ թե քաղաքի բարեկարգման, սանիտարական դրության բարելավման, առողջապահության, այլ գլխավորապես ոստիկանության, բերդի և բանտի պահպանության համար։

Սովետական իշխանության տարիներին

փոխվեց քաղաքի տեսքը։ Լենինականի գեղեցիկ հրապարակները, պողոտաները, փողոցները, կուլտուրայի և հանգստի պարկը՝ նրան դասում են մեր երկրի առաջավոր սոցիալիստական քաղաքների շարքը։ Քաղաքում բարձրացել են բազմաթիվ գեղեցիկ, սոցիալիստական ոճով ձևավորված բնակելի շենքեր։ Միայն 1949 թվին քաղաքի բարեկարգման համար տրամադրված է 10,5 միլիոն ռուբլի, որը 46 տոկոսով ավելի է անցյալ տարվա ներդրումներից։ Այս տարի կառուցվելու է 60 մետր լայնությամբ «Հաղթանակ» զբոսանքի պողոտան։ Ընդարձակվում և բարեկարգվում է Թբիլիսիի խճուղին, Կալինինի անվան փողոցը և Լենինի պողոտան։

Հսկայական աշխատանք է կատարվելու բնակարանային շինարարության ուղղությամբ։ Տեքստիլ կոմբինատի ավանում կառուցվելու է նոր դպրոց, իսկ նոր ավաններում 3 մանկապարտեզ, ակումբ, հիվանդանոց և կինո։ Կառուցվելու են 4 նոր, տրանսֆորմատորային ենթակայաններ։

1949 թվին քաղաքում տնկվել է 103 հազար ծառ, կանաչապատվել ու ծառապատվել են Շահումյանի, Բերիայի, Մվերդլովի, Հակոբյանի և Կրուպսկայայի փողոցները։ Քա-



ղաքի նոր թաղամասերում տնկվել է ավելի քան 5000 ծառ։ Ստեղծվում են նոր կանաչ մասիվներ 20 հեկտար տարածությամբ, լայն կերպով ծառազարդվում են քաղաքից դուրս եկող ճանապարհները։ Մեծ աշխատանք է կատարված Տեքստիլ կոմբինատի և մյուս ֆաբրիկաների ու գործարանների, դպրոցների ու հիվանդանոցների տերիտորիաներում ու բակերում։ Քաղաքի պուրակներում և այգիներում բարձրացված են Վ. Ի. Լենինի, Ի. Վ. Ստալինի, Ստ. Շահումյանի, Լ. Պ. Բերիայի կիսանդրիները։

## ՀԱՅՐԵՆԱԴԱՐՁ ՀԱՅԵՐԸ ԼԵՆԻՆԱԿԱՆՈՒՄ

Իրականացել է երկար տարիներ օտար երկնքի տակ դեգերող հայության հայրենադարձության իղձը։ Հայրենի երկրում՝ հարազատ հարկի տակ, ստալինյան հոգատարությամբ հազարավոր հայրենադարձ հայեր գտան հանրօգուտ աշխատանքի, կուլտուրական հանգստի ու միշտ պայծառ ու լուսավոր կյանքի բարիքները։

Վերջին երեք տարիների ընթացքում (1946—1948 թվերին) միայն Լենինականում հայրենադարձ քաղաքացիների համար կառուցվել են չորս գեղեցիկ նոր ավաններ, անհատական բնակարանների կառուցման համար սովետական պետությամբ հայրենա-

տարիներին տրամադրել է 23 միլիոն ռուբլի վարկ։ Հարյուրավոր հայրենադարձ ընտանիքներ արդեն ապրում են սեփական բնակարաններում։ Շուտով ավարտվելու է 532 նոր բնակարանների կառուցումը։

Լենինականում հայրենադարձները ստացան ստեղծագործ աշխատանքի հնարավորություն, որն ապահովված է ստալինյան մեծ Կոնստիտուցիայով։ Հազարավոր հայրենադարձներ ոգևորությամբ աշխատանքի են անցել քաղաքի արդյունաբերական ու երկաթուղային ձեռնարկություններում և համառորեն սկսել են տիրապետել սովետական արտադրության առաջավոր պրոֆեսիաներին։

***

Գեղեցիկ ու երջանիկ է Լենինականը։ Ավելի պայծառ ու հրապուրիչ է նրա ապագան։

Սովետական Հայաստանի արդյունաբերական-կուլտուրական երկրորդ կենտրոնը՝ Լենինականը, ստալինյան ջերմ հոգատարության ներքո դառնում է մեր մեծ հայրենիքի առաջավոր, սոցիալիստական քաղաքներից մեկը։

Խ. ԲԱՐՍԵՂՅԱՆ



# ՉԻՆԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔԱՑԻԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՌԱԶՄԱՃԱԿԱՏՆԵՐՈՒՄ

(Հեռագրերի տեսություն)

Վերջին մեկ ու կես—երկու ամիսների ընթացքում մեծ փոփոխություններ տեղի ունեցան Չինաստանի քաղաքացիական պատերազմի ռազմաճակատներում։ Ժողովրդա-ազատագրական բանակը, շարունակելով զարգացնել հաջող հարձակումը, Կենտրոնական Չինաստանում, Յանցզի գետի հյուսիսային և հարավային մասում գրավեց շատ խոշոր քաղաքներ և 500—600 կիլոմետրով առաջ շարժվեց դեպի երկրի հարավային մասը։

Մարտի վերջում Ժողովրդա-ազատագրական բանակի զորամասերը, ջարդելով գոմինդանական զորքերի մի շարք խոշոր խմբավորումներ, կենտրոնական Չինաստանում լայն ֆրոնտով դուրս եկան Յանցզի գետը։

Գոմինդանական կառավարությունը, կանգնելով անխուսափելի կատաստրոֆի առաջ, համաձայնվեց հաշտության բանակցություններ սկսել չինական կոմպարտիայի հետ։

Ժողովրդա-ազատագրական բանակի հրամանատարությունը զորքերին կարգադրություն արեց հարձակումը դադարեցնելու վերաբերյալ։

Ապրիլի սկզբներին Բեյպին ժամանեց գոմինդանական կառավարության դելեգացիան և բանակցություններ սկսվեցին քաղաքացիական պատերազմը դադարեցնելու պայմաններ մշակելու շուրջ։ Գոմինդանական դելեգացիան ամեն կերպ ձգձգում էր բանակցությունները։ Այդ ժամանակվա ընթացքում գոմինդանական հրամանատարությունը շտապ կերպով կատարում էր իր բանակների վերախմբավորումը, ճակատի գծին էր փոխադրում զորքեր ու սպառազինություն և ամրացնում էր Յանցզի գետի հարավային ափը։ Գոմինդանական կառավարությունը ձգտում էր բանակցություններն օգտագործել այն բանի համար, որպեսզի բարելավեր իր զորքերի վիճակը, պատրաստվեր պատերազմը շարունակելուն։

Չնայած դրան կոմպարտիայի դելեգացիան շարունակում էր բանակցությունները։ Նա ձգտում էր համաձայնության գալ նույնիսկ զգալի չափով մեղմացնելով նախնական պայմանները։ Խաղաղ բանակցությունների հետևանքով մշակվեց քաղաքացիական պատերազմը դադարեցնելու համաձայնագիրը։ Սակայն գոմինդանական կառավարությունը հրաժարվեց ընդունել դելեգացիաների կողմից մշակված համաձայնագիրը և հայտարարեց, որ կշարունակի պատերազմը



Ժողովրդա-ազատագրական բանակի դեմ «մինչև վերջին զինվորը»։

Գոմինդանական ռեակցիոներները մերժեցին համաձայնագիրը և ապրիլի 20-ի գիշերը Ժողովրդա-ազատագրական բանակի զորամասերը վերսկսեցին հարձակումը։

Երեք օրից հետո Ժողովրդա-ազատագրական բանակը լայն ճակատով անցավ Յանցզի գետը և կռվով գրավեց գոմինդանական Չինաստանի մայրաքաղաք Նանկինը։ Ապրիլի 24-ին գրավվեց Ցզյանսու պրովինցիայի արդյունաբերական և վարչական կենտրոն Չժենցզյան քաղաքը։ Այստեղ Ժողովրդա-ազատագրական բանակը ջախջախեց գոմինդանական զորքերի խոշոր խմբավորումը։ Միայն գերի վերցվեց մոտ 40 հազար գոմինդանական զինվոր։

Մայիսի 3-ին Ժողովրդա-ազատագրական բանակները երեք օրվա կռիվներից հետո, ազատագրեցին Չժեցզյան պրովինցիայի վարչական կենտրոն Խանչժոու քաղաքը, որը գտնվում է Շանհայից 140 կիլոմետր դեպի հարավ-արևմուտք։ Խանչժոուի բնակչության թիվը հասնում է 500.000 մարդու։ Այստեղ գտնվում է Չինաստանում հայտնի ավիացիոն գործարանը, խոշոր նավավերանորոգման գործարանը և մի շարք այլ ռազմական և արդյունաբերական ձեռնարկություններ։

Մայիսի 17-ին Սինխուա գործակալությունը հաղորդեց Կենտրոնական Չինաստանի երեք խոշոր քա-

քաղաքների՝ Խանկոուի, Ուչանի, Խանյանի ազատագրման մասին: Խանյան քաղաքը հայտնի է իր ռազմական և ծանր արդյունաբերության ձեռնարկություններով: Այստեղ գտնվում են մետալուրգիական կոմպանիայի՝ Չինաստանում ամենախոշոր ռազմական գործարանները, այդ թվում հայտնի հրետանային գործարանը: Խանկոուն Չինաստանի ամենախոշոր գետափնյա նավահանգիստներից մեկն է, թեյի առևտրի կենտրոնը: Ուչանը Խուբեյ պրովինցիայի վարչական կենտրոնն է:

Խանկոուն, Ուչանը և Խանյանը գտնվում են իրար մոտ և միաձուլվելով դարձել են մի խոշոր քաղաք, ընդունելով ընդհանուր անուն՝ Ուխան:

Ուխանի բնակչությունը մեկ միլիոն 200 հազարից ավելի է: Գոմինդանական զորքերը, թողնելով քաղաքը, մեծ հարված հասցրին նրա տնտեսությանը՝ ավերելով էլեկտրակայանները, արդյունաբերական ձեռնարկությունները, կամուրջները, ամբարտակները և այլ կառուցվածքներ:

Շարունակելով հարձակումները Ժողովրդա-ազատագրական բանակի զորքերը մայիսի 23-ին գրավեցին Ցզյանսի պրովինցիայի մայրաքաղաք Նանչանը: Նանչանը խոշոր դեր է խաղացել Չինաստանի ռևոլյուցիոն շարժման մեջ: Այստեղ 1927 թ. օգոստոսին, Նանչանյան ապստամբության օրերին, ծնվեց Ժողովրդա-ազատագրական բանակը:

Մայիսի 27-ին գոմինդանական զորքերից լրիվ կեր-



պով մաքրվեց Չինաստանի խոշորագույն քաղաքը՝ Շանհայը. Շանհայի համար մղվող մարտերը շարունակվեցին 15 օր: Գոմինդանական հրամանատարությունը այստեղ հավաքեց իր ամենալավ զորամասերը՝ մինչև 300 հազար մարդ: (Գոմինդանական առկա ամբողջ զինված ուժերի մոտ մեկ քառորդ մասը): Գոմինդանականները հայտարարեցին, որ քաղաքը կպաշտպանվի «մինչև վերջին զինվորը»: Չինական ռեակցիոնները խսկապես, որ համառորեն ձգտում էին իրենց ձեռքը պահել Շանհայը: Եվ դա հասկանալի է: Շանհայը հանդիսանում է երկրի արդյունաբերական, ֆինանսական և առևտրական կարևորագույն կենտրոնը:

Շանհայը, գտնվելով Յանցզի գետի գետաբերանում, կապված է աշխարհի բոլոր նավահանգիստների հետ: Նա գլխավոր տեղն է գրավում Չինաստանի հումույթի արտահանության և արտասահմանյան ապրանքները երկիրը ներմուծելու գործում: Չինաստանի արտաքին առևտրի կեսը կատարվում է Շանհայի միջոցով: Քաղաքում կան 10 հազար արդյունաբերական ձեռնարկություններ, որոնց արտադրական կարողությունը կազմում է ամբողջ երկրի արդյունաբերության կարողության կեսը (բացառությամբ Մանջուրիայի): Շանհայում տեղավորված է Չինաստանի տեքստիլ արդյունաբերության ձեռնարկությունների համարյա 50 տոկոսը: Շանհայը աշխարհի խոշորագույն քաղաքնե-

րից մեկն է հանդիսանում։ Նրա ազգաբնակչության թիվը անցնում է 6 միլիոնից, որից 700 հազարը բանվորներ են։

Շանհայի և Յանցզի գետի հարավային կողմում գտնվող մյուս քաղաքների ազատագրումով այդ գետի հովիտը, սկսած ևանկույից մինչև նրա գետաբերանը, անցավ ժողովրդա-ազատագրական բանակի ձեռքը։ Այդ տերիտորիան, որտեղ գտնվում են ավելի քան 100 ազատագրված քաղաքներ, որոնց թվում Նանկինը և մի քանի պրովինցիաների կենտրոններ, հանդիսանում է Չինաստանի ամենահարուստ շրջաններից մեկը՝ զարգացած արդյունաբերությամբ և գյուղատնտեսությամբ։

Հունիսի 2-ին ժողովրդա-ազատագրական բանակի զորքերը գրավեցին կարևորագույն ծովային նավահանգիստ Ցինդաոն։ Դա երկրի առևտրական և արդյունաբերական մի խոշոր կենտրոն է։ Տեքստիլ արդյունաբերության ձեռնարկությունների քանակով նա զիջում է միայն Շանհային և Տյանցզինին։ Ցինդաոյի ազգաբնակչության քանակը անցնում է 700 հազար մարդուց։

Երկար ժամանակի ընթացքում Ցինդաոյում հաստատված էր Խաղաղ օվկիանոսի արևմտյան մասի ամերիկյան նավատորմիղը, այստեղ էր գտնվում ամերիկյան ծովային հետևակը, այստեղ ամերիկացիները



վարժեցնում էին գոմինդանական զորքերը և զինում նրանց ամերիկյան սպառազինությամբ։

Շանհայի և ծովափնյա զգալի մասի ազատագրումով ամերիկացիները գտնվեցին մեկուսացված դրության մեջ և ստիպված եղան թողնել քաղաքը։ Ցինդաոյի գրավումով ավարտվեց ամբողջ Շանդուն պրովինցիայի ազատագրումը։

Ժողովրդա-ազատագրական բանակը շարունակում է հաջող հարձակումը։ Նրա առաջավոր մասերը մոտեցել են Խունան պրովինցիայի գլխավոր քաղաք Չանշային։ Ժողովրդա-ազատագրական բանակին մեծ օգնություն են ցույց տալիս գոմինդանական բանակի թիկունքում գործող պարտիզանները։ Ամիս ու կես առաջ մարտերի ընթացքում ժողովրդա-ազատագրական բանակը ջախջախել է մի քանի գոմինդանական բանակներ և գրավել է մեծ քանակությամբ ռազմավար։ Վերջին մեկ ամսվա ընթացքում ժողովրդա-ազատագրական բանակի կողմն են անցել մոտ 80 ռազմանավ, որը կազմում է գոմինդանական կառավարության ռազմա-ծովային նավատորմի մոտավորապես քառորդ մասը։ Ինչպես հաղորդում է Սինխուա գործակալությունը, ժողովրդա-ազատագրական բանակի զորամասերը գրավել են ամերիկյան իմպերիալիստների կողմից չինական ռեակցիոներներին տրված սպառազինության 80 տոկոսը։

***

Չինական կոմպարտիայի Կենտրոնական Կոմիտեի անդամ Ժեն-Բի-շիի հայտարարության համաձայն 1949 թ. մարտի վերջին գոմինդանական զորքերի թիվը կրճատվելով հասել էր մինչև մեկ միլիոն 100 հազար մարդու։ Ժողովրդա-ազատագրական բանակի զորքերի թիվը աճելով հասել է ավելի քան 3 միլիոն մարդու։ Ազատագրված շրջանների տերիտորիան զգալի կերպով ընդարձակվել է։ Ազատագրված շրջանների ազգաբնակչության քանակը այժմ հասնում է մինչև 250 միլիոն մարդու, այսինքն երկրի ազգաբնակչության կեսից ավելին։ Այստեղ է գտնվում Չինաստանի ամբողջ արդյունաբերական ձեռնարկությունների երեք քառորդ մասը— ծանր արդյունաբերության բոլոր ձեռնարկությունները, քարածխի հանքերի ավելի քան 90 տոկոսը և երկրի երկաթուղային ցանցի մոտ 80 տոկոսը։

Գրավելով բնակավայրերը և քաղաքները Ժողովրդա-ազատագրական բանակը վերականգնում է կառավարման օրգանները դեմոկրատական հիմունքներով։ Ազատագրված տերիտորիայի զգալի մասում, որտեղ ապրում է 160 միլիոն մարդ, արդեն լրիվ չափով անց է կացված հողային ռեֆորմը։



Ժողովրդա-ազատագրական բանակը, որը ղեկավարվում է Չինաստանի կոմպարտիայի կողմից, վերջին ժամանակների ընթացքում ծանր պարտություն հասցրեց գոմինդանական բանակին։ Ոչ ամերիկյան ինքնաթիռները, ո՛չ տանկերն ու հրետանին, ո՛չ ամերիկյան զինվորական խորհրդատուները ու հրահանգիչները, ո՛չ Չինաստանում քաղաքացիական պատերազմը բորբոքելու համար ԱՄՆ-ի կողմից ծախսված 6 միլիարդ դոլլարները չկարողացան փրկել գոմինդանական ռեակցիոներներին ծանր պարտությունից։

Չինական ժողովրդի պայքարը գոմինդանի և օտարերկրյա իմպերիալիզմի դեմ դեռ չի ավարտվել։ Ամերիկյան ռեակցիոներները դեռևս շարունակում են օժանդակել գոմինդանական բանակին։ Սակայն, ազգային-ազատագրական շարժումը Չինաստանում ընդունել է այնպիսի չափեր, որ ոչ մի ամերիկական սպառազինում, ամերիկյան իմպերիալիստների կողմից ոչ մի օգնություն ի վիճակի չէ խանգարելու չինական դեմոկրատիայի հզոր ուժերի վերջնական հաղթանակը ռեակցիայի ուժերի նկատմամբ։

Ի. ՆԱՏԱՆԻՆ

(«Блокнот агитатора» № 16, 1949 г.).

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Կ. ՍՏԱՆՅՈՒԿՈՎԻՉ— «Ծովային պատմվածքներ»: Հայպետհրատ, 150 էջ, գինը 7 ռ.:

Գ. ԲՈՐՅԱՆ— «Բարձունքներում» (հերոսական դրամա)։ Հայպետհրատ, 93 էջ։

ՎԻԿՏՈՐ ՀՅՈՒԳՈ— «Թշվառներ» (3-րդ մաս), Հայպետհրատ, 355 էջ, գինը 15 ռ.:

ԳԵՎՈՐԳ ԷՄԻՆ— «Նոր ճանապարհ: Հայպետհրատ, 120 էջ, գինը 7 ռ. 50 կ.:

ՊՐՈՖ. Կ. Ֆ. ՕԳՈՐՈԴՆԻԿՈՎ— «Ինչի վրա է հենվում երկիրը»: 1949 թ., Հայպետհրատ, 33 էջ, գինը 1 ռ. 50 կ.:

Պատասխանատու խմբագիր՝
Հ. ԱՅՎԱԶՅԱՆ

ՎՖ 02924 Պատվեր № 564 Տիրաժ 8.100

Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան, Երևան

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 13 1949 г.